## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Վալպարէյի Հոգաբարձութիւնը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Օր. Փիրանեանի, եղբայրներուն, եւ ընտանեկան բոլոր պարագաներուն, վաստակաւոր ուսուցիչ եւ գրագէտ Պ. Տիգրան Փիրանեանի մահուան տխուր առթիւ:

### ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Կը խնդրուի այն տիկինէն որ առջի օր Դպրոցասէրի մէջ գտած ակնոցը անյապաղ յանձնէ «Յառաջ»ի խմբագրութեան:

ՆԱՄԱԿԱՏՈՒՓ, Ս. Աչճեան.— (Վալպարել), ցաւակցութիւն՝ 500 ֆր., առեւտրական ծանուցումը ղրկուած չէր:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ֆ. Կ. Խաչի Տէսինի Ազգ. վարժարանի Կրթ. Մարմինը, շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները.— Հազարական ֆրանք նուիրած են՝ Պ. Պ. Արմենակ Ոսկանեան, Վահան Պարտաքճեան, Պօղոս Տէր Պօղոսեան, Նուպար Պօտուրեան, Օհան Ռաքըճեան, Տիգրան Տէյիրմէնճեան եւ Մարտիկ Տէր Սահակեան: 500ական ֆրանք՝ Պ. Պ. Խաչիկ Լիւլէճեան, Յակոբ Պէրպէրեան (Լիոնէն), Հայկ Զաքարեան, Աբրահամ Սալլապաշեան, Արսէն Սիւզմէճեան, Վահէ Պառաւեան, Միհրան Պառաւեան եւ Տիկ. Թագուհի Ժամկոչեան, Պ. Արապեան 500ֆր. Պ. Գարեգին Մաքինաճեանի մահուան առթիւ:

×

Փարիզի Աղքատախնամի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է ողբ. Տիկին Ժպտուն Ոսկերիչեանի մահուան քառասունքին առթիւ հետեւեալ նուէրները՝ Տիկին Շ. Սալմասլեան եւ զաւակները չորս հազար ֆր., Մանուշեան ընտանիք երկու հազար ֆր.: Շնորհակալութեամբ ստացած է նաեւ Տիկին Խաչերեանէ հազար ֆրանք իր աղջկան՝ Հերմինէ Խաչերեանի մահուան Ա. տարելիցին առթիւ: Թորգոմ Կլտակեանէ հազար ֆր. իր անդրանիկ Թոռան մկրտութեան առթիւ:

### ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Պօղոս Ճիւհէրեանի մահուան առթիւ Տօքթ. Արամ Ճինճեան կը նուիրէ երկու հազար ֆր. Ս. Խաչ եկեղեցւոյ աղքատախնամ յանձնախումբին: (Ստանալ Յառաջէն):

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տարօն Տուրուբերան Հայր. Միութեան Փարիզի մասնաճիւղը կը յայտնէ
ՎԱՐԴԱՎԱՌԻ
Առթիւ, մասնաւոր պատարագ: Եպիսկոպոս Մանուկեան կը պատարագէ 13 Յուլիս, (Կիրակի), Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, առաւօտեան ժամը տասնին: Կը խնդրուի յարգոյ հասարակութենէն մասնաւորաբար հայրենակիցներէն, ներկայ գտնուիլ Տարօնի զոհերուն յիշատակը յարգելու:

×

ՊՈՄՈՆ.— Այրի Տիկին Հերմինէ Միսքիրճեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ այս կիրակի Պոմոնի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցին, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց սիրեցեալ ամուսնոյն եւ հօր Պ. Օննիկ Միսքիրճեանի մահուան քառասունքին առթիւ: Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները:

### ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Սեբաստիոյ Նահանգ. Մուրատ Ուսումնասիրացի Մարսէյլի մասնաճիւղին տարեկան մեծ դաշտահանդէսը տեղի պիտի ունենայ Յուլիս վեցին, կիրակի ամբողջ օրը Սէն Ժիւսթ, Պար տիւ Շալէ, Ավըևիւ Ֆօրոյի պարտէզին մէջ:

Կը նախագահէ ԱՐԱՄ ԱՐՄԱՂԱՆԵԱՆ:

Կը խօսի ԿԱՐ. ՃԱՆԻԿԵԱՆ:

Գեղարուեստական ճոխ եւ խնամուած բաժին, մասնակցութեամբ ծանօթ արուեստագէտներու:

Ճոխ պիւֆէ, չամփուրով խորոված:

Մատչելի գիներով:

Մուտքը ազատ է:

ԾԱՆ.— Քանըպիէրէն առնել 53 Թիւ Հանրակառքը եւ իջնել Սէն Ժիւսթ:



### ԵՂԱՆԱԿԻ ԱՄԵՆԱՄԵԾ
## ԴԱՇՏԱ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղի կողմէ, 6 Յուլիս, կիրակի ամբողջ օրը, Պար «Շառլը» Պուրտոնիէր ծառաշուք եւ օդասուն ընդարձակ պարտէզին մէջ:

Կը բանախօսէ Պ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ:

Գեղարուեստական ճոխ բաժին:

Կը մասնակցի Մարսէյլի Ռատիօկայանի սիրուած երգչուհի Օր. ՍԻՒԶԱՆ ԹՈՎՄԱՍԵԱՆ, մասնակցութեամբ ՍԻՒԶԻ ՏՕՄ (Լա Վուա տ'Օր տիւ Միւզիք Հոլ):

Մարսէյլի հայ արենոյշներու կողմէ հայկական եւ ռոհեմական պարեր:

Երգ, արտասանութիւն եւ գեղեցիկ անակնկալներ Կապոյտ խաչի դպրոցի աշակերտներու կողմէ:

Հայկական եւ եւրոպական պարեր:

Ճոխ պիւֆէ դիւրամատչելի գիներով:

Մուտքը ազատ է:

ԾԱՆՕԹ.— Հանդիսավայր երթալու համար Շափիթրէն առնել Պուրտոնիէրի օթոքարը եւ իջնել վերջաւորութեան, ճիշդ հանդիսավայրին առջեւ:

### ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Կապոյտ Խաչի Կրընոպլի դաշտահանդէսը Կիրակի վեց Յուլիս առաւօտէն մինչեւ երեկոյ, Շաթօ տը Պօ Րըկարի (Սէն Նիզիէի ճամբուն վրայ) գեղատեսիլ եւ օդասուն վայրին մէջ:

Գեղարուեստական խնամուած բաժին կարող ուժերու եւ դպրոցի աշակերտութեան կողմէ: Բարձրախօս հայկական երգապնակներով: Պիւֆէ եւ ըմպելիք:

Մրցանակաբաշխութիւն դպրոցական աշակերտներուն:

Հայկական զուարթ մթնոլորտ: Սիրով կը հրաւիրուին Կրընոպլի եւ շրջաններու հայրենակիցները:

Օթօքարը կը մեկնի Հայնոցէն ժամը 8.30ին, դպրոցին առջեւէն 8.45, Փլաս Վերտէօն 9, Փաքսին առջեւ 9.15:

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Տարեկան մեծ դաշտահանդէս, կազմակերպուած Տէսինի Տարօն - Տուրուբերանի Հայր. Միութեան կողմէ: 27 Յուլիս, կիրակի Տէսինի ծանօթ պուրակին մէջ: Մանրամասնութիւնները յառաջիկային:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէի ներկայացուցչական ժողովը այս Շաբաթ ժամը 20.30ին, Մշակոյթի Տան սրահը: Կը հրաւիրուին Փարիզի եւ շրջանի բոլոր ներկայացուցիչները: Օրակարգ՝ զեկուցում պատգամաւորական ժողովի:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ուսանողական Ռուբէն Միութեան ժողովը այս չորեքշաբթի իրիկուն ժամը 21ին, Րիւ Պլէօ:

### ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սեբուոնդի Շաւիլի «Անդրանիկ» խումբին կողմէ, այս Կիրակի օր, կէսօրէ վերջ ժամը չորսէն տասը, «Ազգային Տան» մէջ 32 րիւ տը Թէրվիզ, Փարիզ:

### ՊԱՏԱՐԱԳ ՋԱՅՆԱՍՓԻՌՈՒԷՆ

Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, այս կիրակի օր ժամը 8.45ին պիտի մատուցուի քառաձայն Ս. պատարագ, ղեկավարութեամբ Արա Պարթեւեանի: Պիտի պատարագէ

ՀԱՅՐԱՊԵՏԱԿԱՆ ՊԱՏՈՒԻՐԱԿ ՏԷՐ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ:

Պատարագի արարողութիւնը պիտի ձայնասփռուի Ֆրանս Թիւ մէկ, Փարիզէնթէր, Կրանտ Օնտ 18.29, Օնտ քուրթ 48 մեթր 39, արեւելեան կրօն. արարողութեան ներկայացուցիչ Պ. Ժէրար Սթէֆանէսքօ պիտի տայ հարկ եղած բացատրութիւնները արարողութիւններու ընթացքին:

### ԽՆՋՈՅՔ ԳԻՆԵՋՕՆ

Կազմակերպուած Սեբաստիոյ Նահանգ. Մուրատ Ուսումնասիրաց Միութեան կողմէ, Կիրակի 6 Յուլիս կէսօրէ յետոյ ժամը չորսէն տասը Մխիթարեան վարժարանի սրահը՝ 26 Րիւ Թրուայոն, Սէվր:

Նոյն վարժարանը ուսանող, Միութեան սան Կ. Զափուրեանի շրջանաւարտ ըլլալուն առթիւ:

Գեղարուեստական բաժնի իրենց բարեշնորհ մասնակցութիւնը կը բերեն Օր. Ժիւլիէթ Աւետիսեան, Պ. Պ. Գարեգին (Թառիստ), Մ. Պօղոսեան, Տէտէեան իր նուագախումբով, Աբրահամեան ինչպէս նաեւ ուրիշ արուեստագէտներ զանազան եւ հաճելի անակնկալներով:

Մուտքը ազատ է:



Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

մասնագէտները կ'արձակեն վճիռ մը եւ իրենք զիրենք ի վիճակի կը նկատեն եզրակացութիւններ քաղել այնքան ծանրակշիռ խնդրի մը շուրջ: Իրենց իսկ խոստովանութեամբ կրցած են միայն սահմանամասերու փոքր մէկ մասը երթալ, առանց թարգմանի, առանց ծանօթ ըլլալու երկրին լեզուին, առանց ոչ մէկ ոստիկանական կամ խուզարկութեան իրաւունքի: Այս պայմաններու տակ, իրենց յայտարարութեան հակառակ յայտարարութիւն մըն ալ եւ նոյն պատճառներով, նոյնքան ունայն է:

Իրականին մէջ, երթալով աւելի յստակ է որ ՄԱԿի քարտուղարին տուած բուն առաքելութիւնը իր գէտերուն «ապամիջազգայնացնել» է Լիբանանի հարցը: Կը թուի թէ ճիգ մը կայ թոյլ տալու Ամերիկայի եւ Անգլիոյ, որոնք (մանաւանդ վերջինը) Շամունին եւ անոր կառավարութեան միջամտութեան ճշգրիտ ապահովութիւններ տուած են, որպէսզի անոնք կարենան նուազագոյն վնասով իրենք զիրենք արձակել խոստումէ մը որ, միջազգային պատճառներով, նպատակայարմար չէ յարգել ներկայիս»:

ՍԱՍՏԻԿ ԿՌԻՒՆԵՐ

Թրիփոլիի մէջ երկու հարիւր զինեալ ըմբոստներ յարձակում գործեցին կառավարական ուժերու վրայ, բայց ետ մղուեցան՝ ծանր կորուստներ ունենալով:

Խռովարարները կրակի տուին կարգ մը շրջաններ, նոյնպէս Թրիփոլիի մէջ:

Ալէյի մէջ (Շուֆ) ապստամբները համախմբուած էին դարձեալ յարձակում մը գործելու համար, բայց օդուժը ռմբակոծելով անոնց հաւաքատեղին ցիր ու ցան ըրաւ խռովարարները:

Տիւրզիներու շարժումը ըստ երեւոյթին անդամալուծուած է. Քամալ Ճումպլաթի հետեւորդները ծանր կորուստներ ունենալէ յետոյ՝ ապաստանեցան Պէյրութի շրջակայ լեռները:

Կատաղի կռիւներ եղան նաեւ Պէյրութի մէջ, ուր 18 ժամ անդադար բանակը հերոսաբար դիմադրեց յարձակումներուն:

Մայրաքաղաքին մօտերը գտնուող Քափր Շըմուլ գիւղը յարձակման ենթարկուեցաւ կառավարութեան կողմնակից քաղաքացիներու կողմէ:

Խռովարարները կրակ բացին նաեւ կառքերու վրայ:

Ոչ մէկ պաշտօնական կամ կիսապաշտօնական տեղեկութիւններ կան առայժմ՝ վերջին օրերու զոհերուն մասին:

Միւս կողմէ Պէյրութի կառավարութիւնը երկրէն արտաքսեց Ա. Մ. Հ.եան եօթը դիւանագէտները, որոնք անբաղձալի գործունէութիւն ունէին: Արտաքին Նախարարութեան պաշտօնական շրջանակներուն համաձայն՝ եօթը դիւանագէտները յարաբերութեան մէջ էին ընդդիմադիր տարրերու հետ:

× Ուրբաթ օր Պէյրութի ամերիկեան դեսպանատան մէջ կը տօնուէր Միացեալ Նահանգներու «Անկախութեան Օր»ը, բայց Ամերիկացիք խանգարուած են լիբանանցի ըմբոստներու կողմէ եւ ստիպուած՝ ընդհատել իրենց տօնակատարութիւնը:

———o———

ՄՈՍԿՈՒԱՅԻ հեռատեսիլէն առաջին անգամ ըլլալով ամերիկեան Դեսպանը խօսեցաւ խորհրդային հասարակութեան. Թոմփսըն մեղմ լեզու մը գործածեց, յայտնելով թէ Ամերիկացիք կը սիրեն ռուսական մշակոյթը, բայց ճշդեց կարգ մը հարցեր, ինչպէս՝ հրատարակութեանց փոխանակութիւնները, գրաքննութիւնը եւ տեղափոխուելու ազատութիւնը, որոնց նկատմամբ Խ. Միութիւնը դրական դիրք չի բռներ. «Հոն՝ ուր իրերահասկացողութիւն կայ, եղբայրացում ան, խաղաղութիւնն ու արդարութիւնը աւելի դիւրաւ կարելի է իրականացնել»:

ԹԻԹՕ – ՆԱՍԸ խօսակցութիւնները կը շարունակուին Եուկոսլաւիոյ մէջ. Արաբ Հանրապետութեան Նախագահը ներկայ եղաւ Հիթլէրի բանակին վրայ Եուկոսլաւներու տարած յաղթանակին 15րդ տարեդարձին տօնակատարութեան, ուր Թիթօ ճառ մը խօսելով ըսաւ.— Մենք ընկերվարական երկիր մը ունինք, ընկերվարութիւնը կը գործադրենք այն ձեւով՝ ինչպէս յարմար կը թուի մեզի ... մենք կը սիրենք բոլոր ժողովուրդներն ու բոլոր մարդերը, բացի անոնցմէ՝ որ կը խաբեն իրենց հարազատ ժողովուրդը:



## ՆՈՒԷՐՆԵՐ

Պիվերէն Տէր եւ Տիկին Թոմասեան իրենց զաւկին Նարեկի ծանր արկածէ մը ապաքինման առթիւ երկու հազար ֆր. կը նուիրեն զոյգ հանգստեան տուներուն եւ հինգ հարիւր ֆր. «Յառաջ»ին: (Ստանալ «Յառաջ»էն):

## ԱԶԳԱՅԻՆ ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ
## ԴԷՊԻ ԼՈՒՐՏԻ ՏԻՐԱՄՕՐ ՍՐԲԱՎԱՅՐԸ

ԲԱՐՁՐ ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

## ԿԱՐՏԻՆԱԼ ԱՂԱՋԱՆԵԱՆԻ

ԿԱԹՈՂԻԿՈՍ – ՊԱՏՐԻԱՐՔ ՏԱՆՆ ԿԻԼԻԿԻՈՅ

ՕԳՈՍՏՈՍ 4 – 8

Կազմակերպիչ մարմին.— Ատենապետ՝ Գերպ. Կ. Ծ. Վ. ԱՄԱՏՈՒՆԻ, Առաջնորդ Ֆրանսահայ կաթողիկէ համայնքին:

Կարգադիր Տնօրէն՝ Գերյ. Յովհ. Ծ. Վ. ՋՈՒՀԱՃԵԱՆ, ժողովրդապետ Մարսէյլի:

Օժանդակ կարգադիրներ՝ Գեր. Տ. Յովս. Վ. ԳԱՖԹԱՆՃԵԱՆ, ժողովրդապետ Փարիզի:

Գեր. Տ. Գր. Վ. Պապեան ժողովրդապետ Վալանսի:

Կազմակերպիչ Գործադիր՝ Յովհ. Ա. ԲԱԳԵԱՆ:

Արձանագրութիւններուն համար դիմել իւրաքանչիւր նահանգին մերձաւոր տեղական Յանձնախումբերուն, որոնք են՝

1.— Գեր. Տ. Յովհ. Վ. Գաֆթանճեան, Փարիզի Ս. Խաչ եկեղեցւոյ ժողովրդապետ, 10պիս, րիւ Թուէն, Փարիզ (5), հեռաձայն ՕՏԷ. 02–12:

2.— Գեր. Տէր Լեւոն Վ. Քէչէճեան, ժողովրդապետ Արնուվիլի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ, 69 ավընիւ Հանրի Պարպիւս, Արնուիլ, (Ս. է Ուազ):

3.— Գեր. Տ. Մեսրոպ Վ. Եէտիքար-տաշեան, ժողովրդապետ Սէն Շամոնի, 2 րիւ տիւ Պէալ, Սէն Շամոն, հեռ. 22 – 09 – 86:

5.— Գեր. Տ. Յովս. Վ. Լեւոնեան, ժողովրդապետ Վիէնի, 22 րիւ Վիքթոր Ֆօժիէ, Վիէն:

6.— Գեր. Տ. Գրիգոր Վ. Պապեան, ժողովրդապետ Վալանսի, 11 Փլաս Սէն Ժան, Վալանս:

7.— Գերյ. Տ. Յովհ. Ծ. Վ. Ջուհաճեան, ժողովրդապետ Մարսէյլի, 92, րիւ տ'Օպաներ, Մարսէյլ, հեռ. Քօլպէր42–84:



## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տարօն Տուրուբերան Հայր. Միութեան Փարիզի մասնաճիւղը կը յայտնէ

ՎԱՐԴԱՎԱՌԻ

Առթիւ, մասնաւոր պատարագ

Սերովբէ եպս. Մանուկեան կը պատարագէ 13 Յուլիս (Կիրակի) Փարիզի Ս. Յովհաննէս – Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, առաւօտեան ժամը տասնին: Կը խնդրուի յարգոյ հասարակութենէն մասնաւորաբար հայրենակիցներէն, ներկայ գտնուիլ Տարօնի զոհերուն յիշատակը յարգելու:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Ֆ. Կ. Խաչի Սեւրանի մասնաճիւղիս բոլոր ընկերուհիները եւ ընկերները իրենց խորին ցաւակցութիւնները կը յայտնեն Պ. Ա. Յակոբեան եւ Տէր եւ Տիկին Ն. Քէօսէեան ընտանիքներուն Տիկին Անժել Յակոբեանի մահուան առթիւ:

Հ. Յ. Դ. Հայաստան ենթակոմիտէի դաշտահանդէսը Յուլիս 13ին, Ավընիւ տը Քօրօ, Պար տիւ Շալէ, Սէն Ժիւսթ:

## ՅԻՇԱՏԱԿԻ ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Տարօն – Սալնոյ Ձորի Հայր. Միութեան, ի յիշատակ Տարօն – Սալնոյ Ձորի հերոսներու:

Կիրակի, 13 Յուլիս Սէնթ Անտրէի զովասուն պարտէզին մէջ:

Կը նախագահէ Հայրենակից Ե. ՄԵԼ – ԳՈՆԵԱՆ: Պիտի բանախօսէ Միութեանս նախագահ հայրենակից Գ. ՇԷԽԻԿԵԱՆ:

Գեղարուեստական խնամուած բաժին, հայկական տոհմիկ պարեր, մեներգ, արտասանութիւն մասնակցութեամբ Մարսէյլի Հայ – Արենոյշներու:

ԾԱՆՕԹ.— Դաշտավայրը երթալու համար Փլաս տ'էքսէն առնել թիւ 25 հանրակառքը եւ իջնել վերջաւորութեանը:

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Կազմակերպուած Համախարբերդ. Միութեան Մարսէյլի մասնաճիւղի կողմէ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ, Յուլիս 27ին, կիրակի ամբողջ օրը Սէն Լու Կրան Փէնի Պ. Հայկազուն Զուքուրեանի օդասուն եւ ընդարձակ ագարակը:

Մանրամասնութիւնները յաջորդով:









Imprimé sur les presses du Journal HARATCH
—— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) ——

ՅՈՒԼԻՍ 14ի ֆրանսական Ազգ. տօնին առիթով «Յառաջ»ի յաջորդ թիւը լոյս կը տեսնէ Չորեքշաբթի :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԿԻՊՐՈՍԻ մէջ 24 ժամուան ընթացքին ութ հոգի սպաննուեցաւ՝ Յոյն եւ Թուրք. քաղաքացիական պատերազմի մը սպառ - նալիքին ենթարկուած է ամբողջ կղզին : Լոնտոնի մէջ կ'ըսուի թէ հաւանականութիւններ կան որ Մաքմիլլըն - Գարամանլիս հանդիպում մը ըլլայ :

ԱԶՐՊԷՅՃԱՆԻ վարչապետը՝ Ռակիմով պաշտօնանկ եղաւ, ինչպէս կը յայտարարէ «Պաքուի Աշխատաւորը» թերթը առանց որեւէ բացատրութիւն տալու : Իրեն կը յաջորդէ կուսակցութեան քարտուղարը՝ Վէլի Եուսեֆ Օկլի Ախունտով : Կը յիշուի թէ Ռակիմով առաջին զոհն է Կրեմլինի որդեգրած նոր խիստ քաղաքականութենէն ի վեր : Բացի կառավարական գլխաւոր պաշտօնէն Ռակինով գործօն անդամ է հանրապետական կուսակցութեան կ. կոմիտէին :

ԶՕՐԱՎԱՐ Րաուլ Սալան առջի օր ըստացաւ զինուորական շքանշան, իսկ զօրավար Էմիլ Մասիւ նշանակուեցաւ զօրաբաժնի զօրավար :

ՓԻՆԷԻ փոխառութիւնը կը փակուէր շաբաթ գիշեր : 250 միլիառէ աւելի դրամ եւ ոսկի մտածեն դրամատուները :

ՍՈՒԷԶԻ Ընկերութեան եւ Արաբական Միացեալ Հանրապետութեան միջեւ վերջնական համաձայնագիրը ստորագրուեցաւ Ժընեւի մէջ. ընկերութիւնը կը պահէ Եգիպտոսէն դուրս գտնուող իր բոլոր ինչքերը, սակէ զատ՝ յառաջիկայ վեց տարիներու ընթացքին Գահիրէ պիտի վճարէ երեք միլիոն սթերլին :

ՕԹԱՒԱՅԻ խորհրդակցութիւններէն ետք Միացեալ Նահանգներ եւ Քանատա կատարեալ համաձայնութիւն գոյացուցին հասարակաց պաշտպանութեան հարցին շուրջ. տնտեսական ճակատի վրայ կարելի չեղաւ դրական արդիւնքներ ձեռք ձգել :

ՓԵՇՏԱՅԻ ձայնասփիւռը հաղորդեց թէ արտաքին առեւտուրի նախարարութեան խորհրդակցութիւններ կ'ըլլան Փեշտայի մէջ՝ հունգարեւռուս մաքսային միութիւն մը ստեղծելու համար :

ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ արձակած միջերկրային նոր հրթիռին յաջողութիւնը կը շարունակէ զբաղեցնել գիտական շրջանակները : Ամերիկեան օդուժին բանբերներէն մէկը յայտարարեց թէ թէեւ կարելի չեղաւ հրթիռին մէջ դրուած մուկը գտնել, բայց «կատարեալ յաջողութիւն» մը կարելի է նկատել փորձը, քանի որ գիտունները իրենց նպատակին հասան :

ԱՆԳԼԻԱԿԱՆ կառավարութիւնը, որ այս ամառ «Սքայլարք» հրթիռի փորձ մը պիտի ընէր, անցեալ Մայիսին կալէսի մէջ նման փորձի մը ձախողութիւնը նըկատի առնելով՝ յետաձգած է զայն :

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ՝ ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ԱՌԹԻՒ

Արձակուրդի առթիւ կը խնդրուի մեր այն բաժանորդներէն, որոնք կը փափաքին իրենց հասցէն փոխել, հարիւր ֆրանք ղրկել վարչութեան, ինչպէս նաեւ՝ նորին հետ, իրենց նախկին հասցէն :

Կը խնդրուի հեռաձայնով չյայտնել նըման փոփոխութիւններ, այլ՝ միայն գրաւոր : Շնորհակալութեամբ՝

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### ՆՈՐԵՐՈՒ ՑԱԶՈՂՈՒԹԻՒՆ

Թաւուր Պօղոսեան յաջողութեամբ աւարտած է Էքոլ Նորմալ տը Թէքնիք, եւ պիտի պաշտօնավարէ պետական վարժարաններու մէջ :

Այս առթիւ, Տէր եւ Տիկին Գրիգոր Պօղոսեան կը նուիրեն Պանեէօ Քաշանի Նոր Սերունդին հազար ֆրանք, հինգ հարիւր ֆր. Մշակոյթի Տան եւ հինգ հարիւր ֆր. «Յառաջ»ի բարգաւաճման համար : (Ստանալ «Յառաջ»էն) :

### ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

Ողբացեալ Ստեփան Քոչարեանի որդին, Միքայէլ, այս տարի եւս օգանաւային դպրոցի 90 ուսանողներուն մէջ առաջին հանդիսացաւ :





ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ Մայիս 11ի գեղարուեստական ցերեկոյթին առիթով Ֆէսանվիլիէի օգափոխութեան կայանին կը նուիրեն.— Տէր եւ Տիկին Ա. Աւագեան 2500 Ֆր., Տէր եւ Տիկին Ե. Սարաֆեան հազար ֆրանք :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ԼԻՈՆԻ Ազգ. Միութիւնը եւ Եկեղեցական Ժողովը շնորհակալութեամբ կը ստանան հետեւեալ նուիրատուութիւնները.— Պ. Պ. Տիրան Հօթթոեանէ հինգ հազար ֆր., Եագուպ Սէֆէրէ հինգ հազար, Աբրահամ Յակոբեանէ հինգ հարիւր, Գրիգոր Նուրիկեանէ հինգ հազար, Յովհ. Օնանեանէ երկու հազար, Յարութիւն Կոլիզեանէ հազար, Կարապետ Պատուականեանէ երկու հազար, Միսաք Ռումէլեանէ 1500, Ասատուր Մարկոյեանէ հինգ հազար, Զաքար Մարկոյեանէ հինգ հազար, Միսաք Կիրակոսեանէ հազար, Մարտիրոսեանէ տասը հազար ֆրանք :

Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան : Ընտանիքի մը կողմէ խնջոյքի մը ընթացքին հաւաքուած 76.000 ֆրանք : Տիկին Ազնիւ Զավուշեանէ հազար ֆրանք, Պ. Յարութիւն Փէքմէզեանէ կնքահայրութեան առթիւ 1500 ֆր., Տիկին Տէյիրմէնճեան, Պ. Լ. Ճիլաճեան, Տէր եւ Տիկին Վարդանեան հազարական ֆրանք :



### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. կոմիտէն կը յայտարարէ, որ «Խանասորի Օր»ը պիտի տօնուի՝ Յուլիս 27ին, կիրակի, ամբողջ օրը, Վալապրըի անտառներուն մէջ : Այժմէն կը հրահանգէ իր բոլոր ենթակոմիտէներուն եւ խումբերուն, որ օր առաջ վարձեն իրենց շրջաններուն համար հարկ եղած օթօքարերը եւ խուռներամ ներկայ ըլլան «Հայ Հերոսներու Օրուան» հանդիսութեանց :

Մանրամասնութիւնները յաջորդով :

×

Ֆ. Կ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղի տարեկան մեծ պարահանդէսը Դեկտեմբեր քանին, Սալոն Սփլանտիտի մէջ :

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Տարեկան մեծ դաշտահանդէս, կազմակերպուած Տէսինի Տարօն - Տուրուբերանի Հայր. Միութեան կողմէ : 27 Յուլիս, կիրակի Տէսինի ծանօթ պուրակին մէջ : Մանրամասնութիւնները յառաջիկային :


Imprimé sur les presses du journal HARATCH

— 17. Rue Bleue. 17 — PARIS (9e) —




### ԸՆՏԱՆԵԿԱՆ ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

ԽԱՆԱՍՈՐԻ ԱՐՇԱՒԱՆՔԻՆ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ԱՌԹԻՒ

Կազմակերպուած՝ Տէսինի եւ Լիոնի կոմիտէներուն կողմէ : Մասնակցութեամբ Փոն տը Շէրիւի «Անդրանիկ» խումբին : 20 Յուլիս, Կիրակի առաւօտէ մինչեւ երեկոյ, Տէսինի ծանօթ պուրակին մէջ :

Կը նախագահէ՝ ընկ. Տ. ՉէՔԵԱՆ

Կը բանախօսէ՝ ընկեր ԱԶԳԻՆ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ (խօսնակ՝ Պ. Կ. Յովակիմեան) :

Գեղարուեստական բաժին, սիրուն անակնկալներ, բարձրախօս : Ու ճոխ պիւֆէ մատչելի գիներով :

Կը հրաւիրուի Տէսինի, Լիոնի եւ մերձակայ գաղութներու Հայութիւնը անխտիր :

Անձրեւի պարագային հանդէսը տեղի կ'ունենայ Տէսինի Հ. Յ. Դ. Տան սրահը :

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Կազմակերպուած Համախարբերդ. Միութեան Մարսէյլի մասնաճիւղի կողմէ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ, Յուլիս 27ին, կիրակի ամբողջ օրը Սէն Լու Կրան Փէնի Պ. Հայկազուն Զուքուրեանի օդասուն եւ ընդարձակ ագարակը :

Մանրամասնութիւնները յաջորդով :

համար, որ տարիներէ ի վեր զրկուած կը մնար հաւաքատեղիէ, թէ Համազգայինի Հանդէս – դասախօսութիւններուն համար: Սրահը ունի իր յատուկ բեմը, որ կրնայ դիւրութիւններ ընծայել նաեւ ներկայացումներու: Այս սրահը միժամանակ պիտի ծառայէ իբրեւ գիշերօթիկներու ճաշարան:

Երրորդ յարկը «Մարտիկեան Թանգարան»ն է, Կեդրոնական Մատենադարանի բաժինով մը: Ծանօթ բարերար Տէր եւ Տիկին Ճորճ Մարտիկեաններ այս նպատակին յատկացուած են քանի հազար տոլլր եւ թանգարանային ճոխ իրեր:

Մայիսի վերջերուն տեղի պիտի ունենար Թանգարանի հանդիսաւոր բացումը նուիրատու բարերարին ներկայութեան, ինչպէս նաեւ պիտի կատարուէր Մշակութային Համագումար, այլազան երկիրներէ գալիք մասնաւորական ներկայացուցիչներով: Մեր մամուլը շաբաթներ շարունակ խանդավառութեամբ արձագանգ եղաւ Համազգայինի այս գեղեցիկ նախաձեռնութեան, որ նոր էջ մը պիտի բանար անկասկած Սփիւռքի մշակութային պատմութեան մէջ· դժբախտաբար սակայն Լիբանանի մէջ ծագած դէպքերը խափանեցին այս ծրագրին իրագործումը առժամաբար: Կը յուսանք, որ անմիջապէս որ խաղաղութիւնը հաստատուի Լիբանանի մէջ, կարելի կ՚ըլլայ թէ թանգարանի բացումը կատարել Պ. Ճ. Մարտիկեանի ներկայութեան եւ թէ խորհիլ Մշակութային Համագումարը կայացնելու մասին:

Նոր շէնքին վերջին երկու յարկերը շինուած են իբրեւ ննջարան գիշերօթիկներու: Մինչեւ հիմա մեր աղջիկ գիշերօթիկները վարձու շէնքերու մէջ պատըսպարուած էին, խճողուած եւ ոչ գոհացուցիչ պայմաններու մէջ: Նոր շէնքը լիովին պիտի գոհացնէ արդիական կացարանի մը անհրաժեշտութիւնները:

## ԱՅՍ ՏԱՐՈՒԱՆ ՀՈՒՆՁՔԸ

Այս տարուան մեր շրջանաւարտները կը բաղկանան եօթը հոգիէ. երեք աղջիկ եւ չորս տղայ: Ենիգոմշեան Սօնա, Նիգիպըլեան Սօնա, Թելեան Շուշան, Եղիայեան Արմենակ, Լուսարարեան Նուպար, Քէլէշեան Շմաւոն եւ Քորթեան Կարպիս:

Այս աւարտականներու հետ միասին մասնաւոր վկայագիր կը ստանան չորս աղջիկներ, չորսն ալ հին ճեմարանականներ, որոնք վերջին երկու դասարաններուն հետեւեցան իբրեւ ազատ ունկնդիր մասնաւոր աշխատանք կատարելով հայագիտական նիւթերու մէջ: Ասոնք են. Եղիսաբէթ Մարտիրոսեան, Զեփիւռ Մարտիրոսեան, Սիմա Ճերմակեան, եւ Գեղանոյշ Պաստրմաճեան:

Ցաւով կ՚արձանագրենք, որ Լիբանանի քաղաքական կացութեան բերումով կարելի չեղաւ տարեվերջի աւանդական մեր հանդէսը կատարել եւ վկայականները բաժնել ծնողքներու եւ հանդիսականներու ներկայութեան:

Յուլիս մէկին Ճեմարանի մէջ համեստ սեղանի մը շուրջ իրենց ուսուցիչներով շրջապատուած աւարտականները ստացան իրենց վկայականները: Թէեւ անշուք, բայց յուզիչ պահ մը եղաւ սակայն, որուն ընթացքին աւարտականները անգամ մը եւս ուխտեցին հաւատարիմ մնալ ճեմարանականի իրենց կոչումին եւ ծառայել հայ ժողովուրդին:

Լիբանանի քաղաքական դէպքերը եւ կարգ մը ուրիշ պատճառներ հնարաւորութիւն չտուին մեզ նաեւ հաւասարակշռելու եւ կայունացնելու ճեմարանի եւելմուտքը: Ճեմարանը առեն մը եւս պէտք պիտի ունենայ կազմակերպութիւններու եւ անհատներու — հայ ժողովուրդի նիւթական օժանդակութեան, որպէսզի ի վիճակի լինի ոչ միայն կայուն պահել իր ներկայ մակարդակը, այլեւ ստեղծական վերելք ունենալ: Մօտ երեսուն տարի հայժողովուրդը գուրգուրանքով ու սիրով պահեց Ճեմարանը. մենք կը հաւատանք որ ասկէ վերջ ալ նոյն նուիրումով աջակից պիտի լինի մեծ հայրենասէրներ Շանթի եւ Ադրալեանի հիմնած ազգանուէր հաստատութեան:

Նշան Փալանճեան Ճեմարանի
Տնօրէն՝ Ս. ՎՐԱՑԵԱՆ

## ՍՏԱՑԱՆՔ

ԷՋՄԻԱԾԻՆ, պաշտօնական ամսագիր Հայրապետական Աթոռոյ Ս. Էջմիածնի, Յունիս 1958:

## ԿՐՕՆԱՔԱՂԱՔԱԿԱՆ ԽՆԴԻՐ ՄԸ ԳԵՐՄԱՆԻՈՅ ՄԷՋ

### ԿԱԹՈՂԻԿԷ ՄԸ ԿՐՆԱ՞Յ ԸՆԿԵՐՎԱՐԱԿԱՆ ԸԼԼԱԼ

Պ. Հրանդ Թորոսեան Քոնպայի մէջ կը պարզէ մանրամասնօրէն այս կրօնա-ւաղաքական բանավէճը՝ որ առեւտ մը ի կեր տեղի կ՚ունենայ Գերմանիոյ մէջ սա խնդրին մասին.— կաթողիկէ մը կրնա՞յ ընկերվարական ըլլալ, առանց վնաս պատճառելու ջերմեռանդ հաւատացեալի իր հանգամանքին եւ իբրեւ հոգեւոր հըպատակ Վատիկանի: Սոցիալ – Դեմոկրատները կը վախնան որ այս հարցին ժխտական պատասխան տրուելու պարագային, իրենց կաթողիկէ ընկերներէն շատեր կը թողուն կուսակցութիւնը, ընկերվարական սկզբունքները անհաշտ սեպելով քրիստոնէական վարդապետութեան հետ:

Վերջին ընտրապայքարի առեն — կը շարունակէ Պ. Թորոսեան — Ատընաուըրի Պաւաքէրկի մէջ ըրած մէկ յայտարարութիւնն էր որ յարոյց այս խնդիրը: Գերման վարչապետը երկընտրանքի մը առջեւ դրած էր ոչ միայն Գերմանիան, այլ նաեւ, Եւրոպան, քրիստոնեայ մնալ, կամ համայնավար դառնալ: Իրմէ առաջ, Տօքթ. Քէլլէր, Մունսթէրի եպիսկոպոսը, շատ աւելի առաջ գացած էր, յայտարարելով թէ «Կաթողիկէ գործաւոր մը չի կրնար ընկերվարական ըլլալ»: Ատընաուըր, երկրորդ ճառով մը բացատրեց իր խօսքերուն բուն իմաստը, միտքերը հանդարտեցնելու համար: Տօքթ. Քէլլէր, ինք, հարկ չտեսաւ բացատրութիւն տալու: Այս գործը Վատիկան ինք ստանձնեց, պատասխանելով Եպիսկոպոսին խօսքերուն դէմ բարձրացող բողոքներուն, յայտնելով թէ՝ այս բարձրաստիճան կրօնաւորը, մերժելով հանդերձ ընկերվարական վարդապետութիւնը, երբեք դիտաւորութիւն ունեցած չէ քաղաքականութեան խառնուելու եւ իշխանութիւն գործ դնելու յաւակնութիւններ (Մախթաւորշ – փոոլս) ունենալու: Գալով սենտիքաներուն, Եկեղեցին երբեք չի պահանջեր որ գործաւորները հրաժարին անոնց անդամակցելէ:

Բայց, այս բացատրութիւնները չգոհացուցին ոչ ընկերվարական, ոչ ալ ազատական կուսակցութիւնները որոնք յարձակողականի սկսան:

Հանրածանօթ ընկերվարականուհի մը, Հէլէնը Վէսսէլ, դիտել տուաւ մանաւորաբար հետեւեալը.— Ճիշդ է որ 1891ին եւ 1931ին հրատարակուած վատիկանեան երկու կոնդակներուն (Ռէռում նովարում եւ Քուադրաժէսիմօ անոօ) համաձայն, կաթողիկէութիւնը եւ ընկերվարութիւնը իրարու հետ հաշտ գացող վարդապետութիւններ նկատուած չեն, եւ սակայն, Պապերու ըմբռնած ընկերվարութիւնը որ եւ է հասարակաց կապ չունի Գերմանիոյ այսօրուան ընկերվարութեան հետ, ո՛չ տեսականօրէն, ո՛չ գործնականապէս: Հէլէնը Վէսսէլի կարծիքով, սոոր ապացոյցը ան է որ, ժամանակին, Անգլիացի ծխականի մը հարցման պատասխանելով, Վատիկան յայտնած է թէ վերոյիշեալ կոնդակները Մեծն Բրիտանիոյ Աշխատաւորական կուսակցութեան համար չեն:

Եւ սակայն, այս փաստարկութիւնը մասամբ ճիշդ է միայն: Անիկա ընդունելի չի կրնար ըլլալ Ռէռում նովարում կոնդակին համար, որուն մէջ Լեւոն ԺԳ. պապը կը դատապարտէր Մարքսականութիւնը, իր այն ձեւին մէջ՝ որով ան բանաձեւուած էր գերման Սոցիալ – Դեմոքրաթներուն կողմէ, Էրֆուրդի մէջ խմբագրուած իրենց ծրագրին մէջ: Քառասուն տարի ետքն է միայն որ Պիոս ԺԱ. պապը, նկատի առնելով ընկերային կեանքի մէջ այդ ժամանակամիջոցին, տեղի ունեցած փոփոխութիւնը աշխատաւորներուն եւ իրենց գործատէրերուն յարաբերութեանց մէջ, իրարմէ անջատեց սեփականութեան իրաւունքը եւ սեփականութեան գործածութեան իրաւունքը: Ուրիշ խօսքով, եթէ սեփականութեան իրաւունքը անբռնաբարելի նկատեց, միւս կողմէ, սակայն, ընդունեցաւ որ կարելի էր սահմանափակել անոր գործածութիւնը, յօգուտ ընդհանուրին շահերուն:

Այս ճշդումէն ետք, Պ. Թորոսեան կը շարունակէ պարզել զանազան կուսակցութեանց եւ կազմակերպութեանց կողմէ (Քրիստոնեայ Ռամկավար, Ընկերվարական, Ռամկավար Ազատական, Կաթողիկէ Աշխատաւորներու Շարժում, եւն.) յայտնուած թեր ու դէմ կարծիքները, եւ կը վերջացնէ իր յօդուածը հետեւեալ կերպով.—

Ուշադրութեան արժանի է հարցը որ կը յուզուի այս կերպով, որովհետեւ ան կը շահագրգռէ եւրոպական ուրիշ երկիրներ ալ, եւ մասնաւորապէս Ֆրանսան, Պելժիան, եւ Իտալիան, ուր ընկերվարական սկզբունքներու վրայ հիմնուած, բայց քրիստոնէական վարդապետութենէ ներշնչուող քաղաքական խմբակցութիւնները ծաւալ կը ստանան հետզհետէ, թէեւ հարցը այս երկիրներուն մէջ ստացած չըլլայ տակաւին այն սուր հանգամանքը՝ զոր ունի Դաշնակցային Գերմանիոյ մէջ:

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԱՅԱՆԸ

Յուլիս երեքին հասայ Մորէզ, Ժիւրա նահանգին մէջ վեց հազար հոգինոց գիւղաքաղաք մը: Պէլֆոնթէն գիւղը, ուր կը գտնուի Կապոյտ Խաչի օդափոխութեան կայանը, Մորէզէն իննը քիլոմեթր միայն հեռու է: Կայանի վայրը ուղղակի հրաշալի է, դաշտ – անտառ շէնքին շուրջ: Շէնքը ընդարձակ է, ուր պատսպարուած են վեցէն 12 տարեկան մանչեր եւ մինչեւ 16 տարեկան աղջիկներ:

Ես առաջին անգամ կուգայի Կապոյտ Խաչի կայանը: Որեւէ գաղափար չունէի կազմակերպուած գործի մասին: Կարդացած էի «Յառաջ»ի մէջ քանի մը յօդուածներ:

Այսօր ես կ՚ուզեմ իմ աչքերով տեսածս նկարագրել այդ հոյակապ գործի մասին:

Անկեղծօրէն ըսեմ, ես որեւէ կազմակերպութեան մէջ չեմ տեսած ցարդ այսպիսի հոգածու խնամք տղայոց, ուղղակի մայրական հոգածութիւն:

Պաշտօնէութիւն մը որ համակուած է անհուն զոհողութեամբ: Տեսնել կ՚արժէ, ինչ գուրգուրանքով կը գրկեն, կը կերակրեն, կը զուարճացնեն, կը պտտցնեն տղաքը: Պատշաճ կը համարիմ տալ պաշտօնէութեան անունները, որոնց յանձնուած է կայանի խնամքը եւ որոնք ձեռնհասօրէն կը ղեկավարեն գործը:

Տնօրէնուհին է Օր. Լուիզ Փափազեան, փորձառու եւ անձնուէր օրիորդ մը:

Ճաշարանապետներն են Տէր և Տիկ. Պօղոս Սատըզեան որոնք օրն ի բուն կ՚աշխատին, կրակին դիմաց, օրը երեք անգամ, մօտաւորապէս հարիւր հոգիի ճաշ պատրաստելու համար: Խնամքով եփուած են ճաշերը: Տղաքը անյագաբար եւ մեծ ախորժակով կ՚ուտեն:

Իսկ երկու հայ մայրիկներ կան, որոնց յանձնուած է կայանի մաքրութիւնը, հարիւրաւոր ամաններու լուալը, տղոց ճերմակեղէններուն լուացքը, (83 հոգի են առաջին խումբին տղաքը):

Ցողնեցուցիչ գործ, օրն ի բուն ոտքի վրայ են՝ ասոնք, Տիկիններ Նազլըմ Կակոյեան եւ Սրբուհի Գարասլանեան:

Իսկ հսկիչներն են Օրիորդներ Մայտա Մարգարեան, Սիրանոյշ Գօճաօղլանեան, Անէթ Պառաւեան, Տիկին Մելինէ Մելքոնեան, Պ. Լեւոն Մոմճեան եւ Պ. Միհրան Դաւիթեան: Անխոնջ անդադար ասոնք կը գրաղին տղոցմով, կը պտտցնեն զանոնք, երգեր, պարեր, ոտանաւորներ կը սորվեցնեն, կը կազմակերպեն իրիկունները փոքր գեղարուեստական հաւաքոյթներ: Երջանիկ են տղաքը, ուրախ ու զուարթ:

Բացի մաքուր օդէն եւ սնունդէն եւ մայրական խնամքէն, ուրեմն տղաքը կ՚ապրին նաեւ հայկական հարազատ մթնոլորտի մէջ:

Պատիւ Ֆրանսահայ Կապոյտ Խաչին, որ հազար զոհողութիւններով, եւ շնորհիւ իրեն զօրավիգ անհատներու, կարողացաւ տալ Ֆրանսահայ գաղութին տիպար կայան մը տղոց օդափոխութեան համար:

ՀԵՐՄԻՆԷ



«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (213)

# ԿԱՅԾԵՐ

### Բ. ՀԱՏՈՐ

### ԺԲ.

### ՄԻ ՔԱՆԻ ԽՕՍՔ ԱՆԱՊԱՏՆԵՐԻ ԳՈՅՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

Նա բացատրեց, թէ ծովակի ջուրը դարերի ընթացքում հետզհետէ բարձրացել է եւ ողողել է իր եզերքը. շատ նշանաւոր տեղեր եւ շինուածքներ, որ պատմութեան մէջ յայտնի էին, այժմ կամ ի սպառ ծածկուել են ջրի տակը, կամ ցամաքից կտրուելով, կղզիացել են: Նա օրինակ բերեց Արճէշ բերդաքաղաքը, որ այժմ չորս կողմից առնուած է ջրով եւ նրա ամենափոքրիկ մասն է միայն երեւում, եւ խոստացաւ ցոյց տալ ինձ Աղթամար կղզու վրայ գտնուած Արծրունի թագաւորների պալատները, որ այժմ կորած են ջրի տակ: Ես շնորհակալութիւն յայտնեցի, խնդրելով, որ բացատրէ ինձ, թէ ի՞նչպէս զարգացաւ Հայերի մէջ անապատական կեանքը, ինչո՞ւ մարդիկ թողեցին աշխարհը եւ առանձնացան անապատների ամայութեան մէջ:

Աւանը այդ մասին թէ այն օր ճանապարհին, եւ թէ ուրիշ ժամանակ, շատ բան էր խօսացել ինձ, եթէ բոլորը գրելու լինեմ, մի ամբողջ գիրք կը դառնայ. ես կը դնեմ այստեղ այնքանը միայն, որքան վերաբերում է մեր տեսած Կտուց անապատին եւ Վանայ ծովակի մէջ գտնուած միւս երկու անապատներին, որ կոչւում են Լիմ եւ Աղթամար:

Պէտք է որոշեն միմեանցից, ի՞նչ է վանքը, ի՞նչ է անապատը:

Մեր հայրենիքում վանքերը եղել են սկզբում մի տեսակ հոգեւոր – բարեգործական հիմնարկութիւններ: Նրանք ծառայել են իբրեւ դպրոց, ծառայել են իբրեւ հիւանդանոց կամ ուրկանոց, ծառայել են իբրեւ աղքատանոց, ծառայել են իբրեւ իջեւան ճանապարհորդների համար, եւ մեր լեռնային երկրի ամենադժուարին տեղերում, ձմեռնային ամենասաստիկ ցրտերի ժամանակ, պատսպարան են դարձել օտարներին ու պանդուխտներին, մի խօսքով, վանքերը ունեցել են իրանց մարդասիրական նպատակները, որոնք, դարերի ընթացքում կերպարանափոխուելով, հետզհետէ շեղուել են իրենց իսկական նշանակութիւնից, եւ, վերջապէս, անօգտաւէտ են դարձել:

Վերոյիշեալ նպատակների համաձայն, վանքերը կառուցւում էին այնպիսի տեղերում, որ աւելի հեշտ հաղորդակցութիւն ունենան մարդիկների եւ աշխարհի հետ, որ կարողանան ծառայել իրանց նշանակութեանը:

Բայց այդպէս չէ եղել անապատը: Նա անջատուել է կեանքից եւ խզել է իր բոլոր յարաբերութիւնները աշխարհի հետ, եւ այդ իսկ նպատակով, իր գոյութիւնը պահպանելու համար, ընտրել է երկրի ամենաթաքթաքուր տեղերը: Նա առանձնացել է անտառների մթին խորքերում, ապառաժների անմատչելի անձաւներում, ձորերի խորին փապարներում եւ լճակների անրնակ կղզիներում:

Անապատը այլ խօսքով կոչւում է մենաստան, իսկ վանքը — իջեւան, այդ երկու անունների նշանակութեան մէջ, մեծ զանազանութիւն կայ:

Անապատը կենդանի մահացութիւն է. նրա նպատակն է՝ սպաննել արտաքին մարդը — մարմինը, որպէսզի կենդանանայ ներքին մարդը — հոգին:

Բայց ի՞նչից առաջ եկաւ այդ կատարեալ անձնուրացութիւնը, այդ յոժարակամ ինքնամերժումը կեանքից ու աշխարհից:

ՐԱՖՖԻ

(Շար.)

թէ ցարդ ոչ մէկ որոշում տրուած է՝ որ Իրաք պիտի քաշուի Պաղտատի Ուխտէն, աւելցնելով.— Պատրաստ եմ գործակցելու Պաղտատի Ուխտին անդամ երկիրներով, մասնաւորապէս՝ մահմետական պետութիւններուն հետ:

Ուշագրաւ է նաեւ այն պարագան թէ Տըլըսէն եաք Թուրքիոյ պատուիրակն ալ Լոնտոն երթալէ առաջ հանդիպեցաւ Պոն եւ խորհրդակցութիւն մը ունեցաւ Վարչապետ Ատընաուըրի հետ. Ֆրանսայի Արտաքին նախարարը այսօր կ'երթայ Արեւմտեան Գերմանիա՝ կարեւոր խօսակցութիւններ ունենալու համար վարչապետին հետ: Իտալիա յայտարարեց արդէն, թէ համակարծիք է Արեւմտեան Գերմանիոյ հետ:

### ԱՄԵՐԻԿԱՑԻ ՄԸ ՍՊԱՆՆՈՒԵՑԱՒ ԼԻԲԱՆԱՆԻ ՄԷՋ

Այգընհաուըրի պատուիրակը՝ Ռապըրթ Մըրֆի կը շարունակէ իր գործունէութիւնը Պէյրութի մէջ. լաւատես է եւ կը յայտարարէ թէ շուտով Լիբանան պիտի ունենայ Հանրապետութեան Նախագահ մը: Թեկնածուները չեն պակսիր. հաւանական է սակայն, որ միութիւնը ստեղծուի ոչ-քաղաքական անձի մը շուրջ, որուն անունը չի տրուիր, բայց կը կարծուի թէ զինեալ ուժերու ընդհանուր հրամանատար զօր. Շեհապն է ան:

Մըրֆի այցելած է ըմբոստ Տիւրզիներու պարագլուխ Քամալ Ճումպլաթի եւ Պէյրութի ապստամբներու պարագլուխ Սաէպ Սալամի, որոնց կարծիքը հօշափած է տագնապին լուծում մը գտնելու համար: Սալամ յայտարարած է թէ դէմ է Նախագահի մը ընտրութեան՝ այնքան ատեն որ ամերիկեան ուժերը կը մնան Լիբանանի մէջ: Մըրֆի պատասխանած է, թէ Օգոստոս երեքին 6րդ նաւատորմիղը պիտի երթայ Պէյրութ՝ զինուորները պարպելու համար:

Միւս կողմէ կռիւները կը շարունակուին ըմբոստներուն եւ բանակին միջեւ: Խալտէի միջազգային օդակայանին շըրջակայքը տեղի ունեցած զինամարտի ընթացքին՝ ամերիկացի զինուոր մը զոհ գնաց վրիպած գնդակի մը: Առաջին Ամերիկացին՝ որ կը սպաննուի ըմբոստներու գնդակներէն:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Կապոյտ Խաչի Պոմոնի վարչութիւնս իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ այրի Տիկին Լեւոնուհի Պետիկեանի եւ իր զաւկին, ինչպէս նաեւ Տէր եւ Տիկին Արամ Պետիկեաններուն եւ պարագաներուն ողբ. Հայկ Պետիկեանի մահուան տխուր առթիւ:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ֆ. Կ. Խաչի Տէսինի «Ազգային» վարժարանի կրթական մարմինս, շնորհակալութեամբ ստացած է Հ. Բ. Ը. Միութեան Փարիզի Կեդր. Յանձնաժողովէն, յիսուն հազար ֆրանքի նպաստ մը դպրոցին՝ այս տարեշրջանի համար:

Նոյնպէս շնորհակալութիւններ Տէսինի մասնաժողովին՝ իր ջանքերուն համար:

×

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է, փոխան պարահանդէսի, հետեւեալ նուէրները.—

Բարեսէր տիկին մը տասը հազար ֆր., Տիկիններ Կ. Յակոբեան, Շարլօթ Օֆօֆեան, Պ. Պ. Ա. Տապաղեան, Գ. Պագըրճեան, Կիւրխինլեան հինգ հազարական, Ոմն երեք հազար, Տէր եւ Տիկին Տօքթ. Պօղոսեան, Տէր եւ Տիկին Տ. Խարբութլեան, Տէր եւ Տիկին Տարօնեան, Կրէկուար Նազարէթեան երկու հազարական, Պ. Պ. Ա. Յակոբեան, Սապոնճեան-Արաքս, Ն. Քիզիրեան, Վ. Մոստիչեան, Ս. Թէրզեան, Ժիրայր, Մ. Փիլիպոսեան, Րիզաք, Ետիքարտաշեան, Ս. Մութաֆեան, Ալեան հազարական ֆրանք:

Պ. Շահպազեան տասը հազար ֆրանք:

## ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ
### ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ ՀԱՄԵՐԳԸ

Նոյեմբեր 2ին, Սալ Կավօ

### ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Դեկտ. 7ին Սալ տէ զ'Ամպասատէօռ

Վարչութիւնը կը խնդրէ որ հայկական կազմակերպութիւնները նկատի ունենան այս թուականները:

# Օրեր եւ Ժամեր

## ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՃԱՄԲԱՐԸ
### AU LAC PALADRU, ISÈRE

Առաջին անգամ ըլլալով այս տարի գտնուած է հակայ չէնք մը: Գեղատեսիլ վայր՝ լիճին ճիշդ քովը: Ֆութպոլի եւ թենիսի յատուկ դաշտերով:

Օգոստոս 1էն 30:

Օրական՝ 700 ֆրանք:

Ու – Նոր Սերնդականները պէտք է դիմեն իրենց շրջանի խումբերուն վարչութեանց:

Դիմել

ALEX KOUYOUMDJIAN
10, Rue d'Enghien, Patis (10e)
TAI. 48-01

Մարսիլիոյ շրջանի համար դիմել՝

Քաղաք՝ Էփիսըրի Թիւպանօ ԼԵՒՈՆ ՔԼՃԵԱՆ, 18 Րիւ Թիւպանօ, Մարսէյլ:

Պոմոն՝ ՏԻԳՐԱՆ ՂԱԶԱՐԵԱՆ, 14 Պուլ. Վօքուա Լարոզիէռ:

Պ. Օտտօ՝ ԱՐԶՈՒՄԱՆԵԱՆ 84 Պուլ. տը լա Մէտիթէրանէ:

Սէն Լու՝ ՇԱՀԷՆ ՀՈՎՋՈՅԵԱՆ, 101 Թըրավէրս Շըվալիէ:

Սէն ժեռոմ՝ ԱԼԻՍ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ, Պուլվ. Արարատ:

Սէնթ Մառկրիթ, ԿԱՐԱՊԵՏ ՏՕՆԱՊԵՏԵԱՆ, Քամփանեւ Րիփէր:



Սէնթ Անթուան՝ ՇՏՈՅԵԱՆ, Կառտան՝ ՍԱՐԳԻՍԵԱՆ, 10 Փիւի-Պիվէր:

Նիս՝ Գ. ԽՈՍՐՈՎԵԱՆ, 1 րիւ Ամիրալ տը Կրաս:

Ավինեոն՝ ՄԱԴՈՅԵԱՆ:

### ԾԱԽՈՒ ՏՈՒՆ

Մոնմորանսիի օդասուն բարձունքին վրայ ծախու են երկու տուներ, ութ սենեակ, կառատուն, փոքրիկ պարտէզ, ջուր, կազ, ելեկտրականութիւն, կեդրոնական ջերմութիւն, բաղնիք:

Դիմել ստիպողաբար՝

DANton 88-65

### ՍՏԻՊՈՂԱԲԱՐ Կ'ՈՒԶՈՒԻՆ

Երկու վկայեալ հիւանդապահուհիներ կ'ուզուին հայկական զոյգ ծերանոցներուն համար (Անտիյի եւ Մոնմորանսի): Ներկայանալ ամէն օր Ազգատախնամի գրասենեակը՝ 32 րիւ տը Թրէվիզ, Փարիզ (9):

Imprimé sur les presses du Journal HARATCH
17, Rue Bleue, 17 – PARIS (9e)

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԱԱՅՆ

Բ. խումբը Փարիզէն կը մեկնի Օգոստոս վեցին, Կառ տը Լիօն գտնուիլ ոչ աւելի կանուխ քան ժամը ճիշդ 22, որպէսզի կարելի ըլլայ անմիջապէս ներս մտնել: Հաւաքատեղի Փլաս տը Լ'Օռլօժ:

Լիոնի շրջանի պզտիկները մեկնում 4 Օգոստոսին: Ժամը ճիշդ 16ին գտնուիլ Փէռաշի կայարանի ժամացոյցին տակ:

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Թիֆլիսէն (Վրաստան) Պօղոս Թօրէքեան կը փնտռէ (Սապանճայի Նոր Գիւղէն) իր հօրաքրոջ աղջիկը՝ Նուէր Բըլեան, Թէֆէրի աղջիկը, որ ամուսնացած է եւ կը կարծուի թէ նոր մականունն է Խոսրովեան: Կը փնտռէ նաեւ հօրեղբօր աղջիկը՝ Կուսինէ Արբահամեան. կը կարծուի թէ այս վերջինը կը գտնուի Փարիզ (Քլինեանքուր) կամ Մարսէյլ: Լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել.— Նորայր Մարգարեան, 62 րիւ Տօֆինէ, Լիօն:

×

Հայաստանի Շամշադինի շրջանի Բերդ գիւղէն Տիկին Հայկանոյշ եւ իր որդին՝ Սարգիս Իվանի Աթոյեան, կը փնտռեն իրենց ամուսինն ու հայրը՝ Իվան Սերգոյի Աթոյեան, որ Բ. Աշխարհամարտին գինուոր մեկնեցաւ: Լուր ունեցողներէն կը խնդրուի տեղեկացնել.— Անդրանիկ Ադամեան, Ֆոնտաքըը Շանֆ Ֆլէօրի, Վիլլա Օրանժ, Սէն Ժիւլիէն, Մարսէյլ:

(Արտասահմանի թերթերէն կը խնդրուի արտատպել):

